Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 14 ՀՈՒԼԻՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### Նյութեր զրույցների համար

*Բերքահավաքը համաժողովրդական գործ է* . . . 1

Խ. Հովակիմյան.— *Զրույց սովետական հայրենասիրության մասին* . . . . . . . . . 6

### Առաջավորների փորձից

*Սովորում ենք առաջավորներից.— Մարտունու շրջանի Վաղաշեն գյուղի կոլտնտեսության կթվորուհի, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Բ. Հակոբյանի պատմածը* . 16

*Ինչպես եմ ապահովում կոմբայնի անխափան աշխատանքը.— Շահումյանի շրջանի ՄՏ կայանի կոմբայնավար Մ. Բաղդասարյանի պատմածը* . . . . . . . . . . . . . . . 23

Խ. Մարտիրոսյան.— *Արտադրության բարձրացման ուղիով* . . . . . . . . . . . 28

### Միջազգային թեմաներ

Յա. Մակարենկո.— *Ժողովուրդները կպաշտպանեն խաղաղությունը* . . . . . . . . . 35

---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, 11 հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս 2—52—78։*





# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ Է

*Ռեսպուբլիկայում սկսվել և բուռն թափով առաջ է գնում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը։ Դա գյուղատնտեսական աշխատանքների ամենապատասխանատու ժամանակաշրջանն է, երբ մեր կոլտնտեսականները, սովխոզների ու ՄՏ կայանների աշխատողները հավաքում են իրենց ազնիվ ու քրտնաջան աշխատանքի պտուղները։ Նրանք անձնվիրաբար պայքարել են հացահատիկի արտադրությունն ավելացնելու մասին պարտիայի ու կառավարության որոշումները կենսագործելու համար, և այժմ ձեռք են բերել նշանակալից հաջողություններ։ Կոլտնտեսային դաշտերում փարթամորեն աճել են հացահատիկային կուլտուրաների ցանքերը և շատ կոլտնտեսություններ արդեն հացահատիկի ռեկորդային բերք են ստացել։*

*Անցյալ տարիների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ բերքահավաքը հաջողությամբ է կատարվում միայն այնտեղ, որ համառ պայքար է տարվում կորուստների*





դեմ, որտեղ լավ նախապատրաստական աշխատանքից հետո լրիվ կարողությամբ և արդյունավետ կերպով է օգտագործվում գյուղատնտեսական տեխնիկան, որով լիովին հագեցված են մեր ՄՏ կայանները։ Գյուղատնտեսության ֆրոնտի յուրաքանչյուր աշխատող անձնական փորձով համոզվել է, որ լավ բերք աճեցնելը քիչ է, հարկավոր է այն հավաքել ժամանակին և առանց կորստի։ Օրինակ՝ Շահումյանի շրջանի Ն. Շենգավիթի Կալինինի անվան կոլտնտեսությունը անցյալ տարի ցորենի յուրաքանչյուր հեկտարից 25, իսկ այս տարի 35 ցենտներ բերք ստացավ նաև այն բանի շնորհիվ, որ բերքահավաքը կատարեց առանց ձգձգումների, 7—8 աշխատանքային օրում։ Նման օրինակներ շատ կան։ Կան նաև դրան հակառակ օրինակներ, երբ անցյալ տարի բերքահավաքի ձգձգման պատճառով մի շարք կոլտնտեսություններ ցածր բերք ստացան։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումում խոսելով հացահատիկի արտադրությունն ավելացնելու մասին, ընկեր Ն. Ս. Խրուշչևը նշեց, որ անհրաժեշտ է առաջին հերթին կրճատել բերքահավաքի ժամանակ հացահատիկի անթույլատրելի մեծ կորուստները։ Միանգամայն անհանդուժելի է



այնպիսի վիճակը,— ասաց նա,— երբ բերքահավաքը ձգձգելու հետևանքով շատ կոլտնտեսություններում և սովխոզներում կորչում է աճեցրած բերքի մինչև մեկ քառորդը, իսկ որոշ դեպքերում՝ նաև ավելին։

Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ընթացքում կորուստների դեմ մղվող պայքարը պետք է լինի ագիտատորների ուշադրության կենտրոնում։ Հարկավոր է կոլտնտեսականներին հանգամանորեն ծանոթացնել բերքահավաքի ընթացքում կորուստների դեմ մղվող պայքարի առաջավոր փորձի հետ, արմատավորել այն յուրաքանչյուր բրիգադայում և օղակում։ Կորուստների դեմ մղվող պայքարը, առաջավոր փորձի պրոպագանդան ու մասսայականացումը կարելի է կատարել ամենօրյա զրույցների, գյուղատնտեսության առաջավորների, մասնագետների և կոլտնտեսականների հետ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների հանդիպումներ կազմակերպելու, ինչպես նաև պարբերաբար լույս ընծայվող դաշտային թռուցիկների միջոցով։ Յուրաքանչյուր կոլտնտեսական պետք է պարզորոշ իմանա, որ բերքահավաքի ձգձգումը մեծ վնաս է պատճառում ոչ միայն կոլտնտեսությանը, այլև հենց իրեն, կոլտն-

տեսականի բարեկեցությանը։ Հիշել, որ պարտիան պահանջում է բերքահավաքը կատարել ոչ ավելի, քան 10 աշխատանքային օրում։

Ժամանակին և առանց կորստի բերքահավաք կատարելու գործում միշտ էլ խոշոր դեր է խաղացել սոցմրցությունը։

Դեռ գյուղատնտեսական տարվա սկզբից, ագիտատորների օգնությամբ կոլտնտեսականները ստանձնեցին լուրջ պարտավորություններ, ինչպես մյուս կուլտուրաներից, այնպես էլ հացահատիկի բարձր բերք ստանալու վերաբերյալ։ Այժմ կարևոր խնդիր է, որ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ մեր ագիտատորները օգնեն կոլտնտեսականներին ստանձնած պարտավորությունները մինչև վերջ կատարելու համար։ Հարկավոր է առանձնակի ուշադրություն դարձնել աշխատանքային կարգապահության ամրապնդման վրա։ Մրցության արդյունքներն ամփոփելիս ստանձնած պարտավորությունները գերազանց կատարողներին խրախուսելու հետ միասին պարսավել նաև այն մարդկանց, որոնք օգտվելով կոլտնտեսականների արտոնություններից, չեն մասնակցում բերքահավաքի աշխատանքներին, զբաղվում են միայն իրենց անձնական գործերով։



Ժամանակին և առանց կորստի հավաքելով այս տարվա առատ բերքը, մեր կոլտնտեսությունները պատվով կկատարեն իրենց պարտավորությունները հարազատ պետության հանդեպ։ Բացի այդ, նրանք չայն հնարավորություն կունենան եկող տարվա ցանքերը բարձրորակ սերմերով, իսկ անասնաբուծությանը կոշտ և սննդատու կերերով ապահովելու համար։ Այդ կամրապնդի մեր կոլտնտեսությունները տնտեսապես ու կազմակերպչորեն և կբարձրացնի կոլտնտեսային աշխատավորների նյութական բարեկեցությունը։

---

# ԶՐՈՒՅՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Խ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

*Հայրենասիրությունը՝ դա աշխատավորների սերն ու նվիրվածությունն է Հայրենիքին, նրա պատվի, ազատության և անկախության համար անձնուրաց պայքարի մշտական պատրաստակամությունը, անդուլ հոգատարությունը Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման նկատմամբ։ Սովետական հայրենասիրությունը ձևավորել, զարգացրել և ամրապնդել է Կոմունիստական պարտիան։ Դրա համար էլ սովետական մարդկանց սերը Հայրենիքի նկատմամբ անբաժանելի է դեպի Կոմունիստական պարտիան տածած սիրուց ու վստահությունից։*

*Սովետական հայրենասիրությունը որակապես նոր, բարձր տիպի հայրենասիրություն է։ Այն ծնունդ է առել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ, ամրապնդվել է մեր երկրի ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում, սոցիալիզմի հաղ-*



*թանակի համար մղվող պայքարում, և ամբողջ ուժով ծավալվել է սոցիալիզմի հաղթանակի, շահագործող դասակարգերի և մարդու կողմից մարդու շահագործման վերացման հիման վրա։*

*Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում, արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության անբաժան տիրապետությունը, հանդիսանում է սովետական հայրենասիրության տնտեսական անխախտ հիմքը։ Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության ստեղծումը, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդումը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ստեղծումն ու ամրապնդումը, սոցիալիստական դեմոկրատիայի հաղթանակը հանդիսանում են սովետական հայրենասիրության քաղաքական հիմքը։ Սովետական հայրենասիրության գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքն է։*

*Սովետական հայրենասիրությունը համաժողովրդական է։*

*Ամբողջ սովետական ժողովուրդը՝ բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան համախմբված են, ունենալով միևնույն շահերն ու նպատակները, միահամուռ կերպով շահագրգռված են ժողովրդական տնտեսության,*

գիտության և կուլտուրայի զարգացման գործով, որովհետև նրանք դրա մեջ տեսնում են իրենց Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման, նրա հզորության հետագա ամրապնդման, իրենց նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման աղբյուրը՝ կոմունիզմի հաղթանակի երաշխիքը։

Սովետական հայրենասիրության հիմքում ընկած է ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը։ Հայրենասիրությունը մեր երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության զգացմունքն է, նրանց ընդհանուր հոգատարությունը ՍՍՌՄ բարօրության մասին։ Սովետական յուրաքանչյուր ժողովրդի պատրաստակամությունն է պաշտպանել սովետական մյուս ժողովուրդների շահերը, որպես իր սեփականը։ Սովետական հայրենասիրության ուժն այն է, որ նրա հիմքում ընկած են ոչ թե ազգային կամ նացիոնալիստական նախապաշարմունքները, այլ խորին նվիրվածությունը և հավատարմությունը իր Հայրենիքին։

Սովետական մարդիկ լավ են հասկանում, որ մեր երկրի տնտեսական, քաղաքական և ռազմական հզորության աճը ապահովում է յուրաքանչյուր մարզի և ռեսպուբլիկայի ա-



զատ զարգացումը, որ կոմունիզմի կառուցումը հնարավոր է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների միասնական ջանքերով, եղբայրական համագործակցության հիման վրա։

Այսպիսով, սովետական հայրենասիրությունը մեր երկրի ժողովուրդներին չի անջատում, այլ համախմբում է միասնական եղբայրական ընտանիքում, ներդաշնակորեն զուգակցում է ժողովուրդների ազգային տրադիցիաները և ՍՍՌՄ բոլոր աշխատավորների ընդհանուր, կենսական շահերը։

Սովետական հայրենասիրությանը խորթ են ազգային թշնամությունը և անվստահությունը, ատելությունն ու արհամարհանքը մյուս երկրների ժողովուրդների նկատմամբ։ Սովետական հայրենասիրությունը անխզելիորեն կապված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետ։ Մեր մարդկանց սերը Հայրենիքի նկատմամբ զուգակցվում է բոլոր երկրների ժողովուրդների նկատմամբ ունեցած խոր հարգանքի հետ։ Սովետական ժողովուրդը հարգում է մյուս ժողովուրդների սուվերենությունը և անկախությունը, միշտ հանդես է գալիս որպես ճնշված ժողովուրդների պաշտպան, համակրում և բարոյական աջակցություն է ցույց տալիս նրանց՝ իրենց ազատու-

թյան և անկախության համար մղվող պայքարում։

Սովետական Միության եղբայրական ու անշահախնդիր օգնության շնորհիվ հաջողությամբ իրականացվում է սոցիալիզմի կառուցումը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Սովետական Միությունը ղեկավարում է խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համաշխարհային լագերը, հետևողականորեն և հաստատակամորեն վարում է միջազգային խաղաղության ամրապնդման և ժողովուրդների անվտանգության ապահովման քաղաքականություն, որի համար էլ վայելում է ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության ջերմ սերն ու համակրանքը։

Սովետական մարդկանց հայրենասիրությունը բնութագրող մոմենտներից մեկն էլ հանդիսանում է սովետական մարդկանց ազգային հպարտությունը։ Այդ հպարտության հիմքում ընկած է մեր գործի համաշխարհային-պատմական նշանակության գիտակցությունը։ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան իրականացրեց արմատական շրջադարձ մարդկության պատմության մեջ՝ հին կապիտալիստական կարգից դեպի նոր, սոցիալիստական կարգը։ Մեր երկրի ժողովուրդները առաջինը տապալեցին կալվածա-



տերերի ու կապիտալիստների իշխանությունը և հաստատեցին Սովետական իշխանություն։ Սովետական մարդիկ առաջինը կառուցեցին սոցիալիզմ, ամրապնդեցին սովետական Հայրենիքը։ Մեր ժողովուրդը երկրորդ համաշխարհային պատերազմում իր ուսերի վրա կրելով պատերազմի ամբողջ ծանրությունը՝ ամբողջ աշխարհի քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։ Այժմ սովետական ժողովուրդը ղեկավարում է խաղաղության հզոր լագերը, ընթանում է սոցիալիզմի, դեմոկրատիայի, խաղաղության համար մղվող պայքարի ավանգարդում։ Մենք հպարտանում ենք նրանով, որ մեր երկիրը հանդիսանում է լենինիզմի Հայրենիքը, որ մենք կառուցում ենք կոմունիզմ և դրանով ամբողջ աշխարհի աշխատավորությանը ցույց ենք տալիս լավագույն կյանքի միակ ճշմարիտ ուղին։

Սովետական հայրենասիրության ուժը հանդես է գալիս սովետական մարդկանց քաղաքական բարձր գիտակցականության մեջ։ Նրա հիմքում ընկած է կոմունիզմի գաղափարը, մեր Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման, նրա հետագա հզորացման անհրաժեշտության գիտակցումը։

Սովետական մարդը սիրում է իր Հայրենի-

քը, որովհետև նա այդ Հայրենիքը նվաճել և պաշտպանել է ռևոլյուցիոն մարտերում, արտաքին և ներքին թշնամիների դեմ մղվող պայքարում, այն վերակառուցել է իր պլանով, դարձրել է այնպիսին, ինչպիսին ինքը ցանկացել է։

Սովետական հայրենասիրության հզոր և անհաղթահարելի ուժը առանձնապես վառ կերպով դրսևորվեց և լիովին հանդես եկավ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Այդ պատերազմում սովետական ժողովուրդը, նրա պանծալի Բանակը՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պաշտպանեցին մեր Հայրենիքի ազատությունը, պատիվն ու անկախությունը և ջախջախեցին գերման-ֆաշիստական զավթիչներին։ Պատերազմի տարիներին ցուցաբերած հերոսական սխրագործությունների համար միլիոնավոր սովետական հայրենասերներ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, 11.420 հոգի արժանացել են Սովետական Միության Հերոսի բարձր կոչման։

Մեր ժողովրդի հիշողության մեջ միշտ վառ կմնան Ն. Գաստելոյի, Ալ. Մատրոսովի, Զ. Կոսմոդեմյանսկայայի, Յու. Սմիրնովի, գվարդիական-պանֆիլովականների, Կրասնոդոնի երիտասարդ գվարդիականների և Հայ-



րենիքի հազարավոր փառապանծ զավակների հերոսական, անմահ անունները։

Հայրենիքի նկատմամբ տածած անսահման սերն ու նվիրվածությունը, սովետական ժողովրդի համախմբվածությունը պարտիայի ու կառավարության շուրջը, ռազմաճակատում և թիկունքում ցուցաբերած մարտական և աշխատանքային սխրագործությունները սովետական բոցավառ հայրենասիրության ամենավառ արտահայտությունն են։

Հետպատերազմյան տարիներին, տոգորված սովետական հայրենասիրությամբ, մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեծ հաջողությունների է հասել ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման բնագավառում։

Հինգերորդ հնգամյա պլանը արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի գծով կատարվեց 4 տարի 4 ամսում։

Դա սովետական ժողովրդի մեծագույն ավանդն է մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պայքարում է արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի, արտադրության կազ-

մակերպումը բարելավելու, գյուղատնտեսության չեչտակի վերելքի ապահովման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման, պարտիայի ու կառավարության բոլոր միջոցառումները կենսագործելու համար։

Սովետական հայրենասիրությունը հանդես է գալիս համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, ժողովրդատնտեսական պլանների կատարման ու գերակատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, խոպան և խամ հողերի յուրացման, կոլտնտեսությունները մասնագետներով և ղեկավար կադրերով ամրապնդելու համար մղվող ժողովրդական պայքարում։

Այսպիսով սովետական մարդկանց սերը Հայրենիքի նկատմամբ ակտիվ գործունեության սեր է, այն դրսևորվում է նրանց ամենօրյա աշխատանքում, կոնկրետ գործերում, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության, աշխատանքային սխրագործությունների մեջ՝ կոմունիզմի համար մղվող պայքարում։

Աշխատավորներին դաստիարակելով աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբեր-



մունքի, Հայրենիքի առջև իր պարտքի և անձնական պատասխանատվության գիտակցության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության ոգով, պարտիան և կառավարությունը է՛լ ավելի են ամրապնդում սովետական հասարակության բարոյա-քաղաքական անխախտ միասնությունը, մեր մեծ Հայրենիքի տնտեսական ու ռազմական հզորությունը, սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության գործն ամբողջ աշխարհում։

---

# ՍՈՎՈՐՈՒՄ ԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻՑ

## Մարտունու շրջանի Վաղաշեն գյուղի կոլտնտեսության կթվորուհի, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Բ. ՀԱԿՈԲՅԱՆԻ պատմածը

Տարիներ առաջ մեր կոլտնտեսության զոոտեխնիկը մեզ բացատրում էր, որ լիարժեք կերի դեպքում կովերի կաթնատվությունը սովորականից ավելանում է 25—35 տոկոսով, իսկ խնամքը լավ կազմակերպելու դեպքում՝ 10—15 տոկոսով։ Մեզ համար սկզբում դա քիչ հավատալի էր։ Բայց առաջավորների և հատկապես գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների հարուստ փորձը մեզ համոզեց, որ իրոք, լավ խնամելու և կերակրելու դեպքում, կովից կարելի է կրկնակի ու նույնիսկ եռակի անգամ շատ կաթ ստանալ։ Այդ է պատճառը, որ այժմ մեր կոլտնտեսության անասնապահ-



ները ջանք չեն խնայում կովերի խնամքն ու կերակրումը բարելավելու համար։

Զոոխմբակի եռամյա դասընթացներում մենք ուսումնասիրեցինք երկրի շատ առաջավորների փորձը։ Այնտեղ մենք ուսումնասիրեցինք նաև ռեսպուբլիկայի Ստեփանավանի, Շահումյանի շրջանների առաջավոր կոլտնտեսությունների նվաճումները, եղանք մեր հարևան «Ագրիչայի» սովխոզում, տեսանք տարեկան 3.000—4.000 լիտր կաթ տվող կովերը, ծանոթացանք նրանց խնամողների փորձին և սկսեցինք առաջավոր փորձն արմատավորել մեզ մոտ։

Առաջավորների օրինակով ես սկսեցի հատուկ ուշադրություն դարձնել կովերի կերակրման վրա, անհատական մոտեցում ունենալ ամեն մի կովի նկատմամբ։ Օրինակ՝ «Սեյրան» և «Մաքան» կովերը սկզբում այնքան կեր էին ստանում, որքան մյուս կովերը, չնայած նրանք շատ կաթ էին տալիս։ Սկսեցի նրանց բաժին կերն ավելացնել։ Արդյունքը եղավ այն, որ նշված կովերի կաթնատվությունը օրական հասավ 25—26 լիտրի։

Սակայն «Սեյրանն» ու «Մաքանն» արդեն ծերացել էին և շուտով շարքից դուրս եկան։ Բայց նրանց փոխարինեցին իրենց աղջիկները՝ «Քիբարն» ու «Ջվարթը»։ Դրանց մենք





անցրել էինք խնամքով, լավ կերակրել ու պահել, որի շնորհիվ դարձան մեր ֆերմայի պարծանքը։ 10 ամիս շարունակ «Քիբարը» օրական տալիս էր 20—30 լիտր կաթ, իսկ «Ջվարթը»՝ 26—28 լիտր կաթ։

Իհարկե, երկու ռեկորդսմեն կով ունենալով ես չէի կարող կատարել 9 կովի կաթնատվության առաջադրանքը, եթե ընդհանրապես չբարձրացնեի բոլոր կովերի կաթնատվությունը։ Ուստի, սկսեցի ճշտորեն կիրառել կովերի խնամքի ու կերակրման ռեժիմը, ինչպես ձմռան մսուրային, այնպես էլ ամռան արոտի շրջանում։ Դրա շնորհիվ զգալիորեն ավելացավ իմ խնամած կովերի կաթն ընդհանրապես։

Վերցնենք թեկուզ այս տարվա ձմռան մսուրային շրջանում կատարված աշխատանքն ու ստացված արդյունքը։ Մսուրային շրջանում ես կովերը կթել եմ օրական 3 անգամ՝ առավոտյան ժամը 6-ին, ցերեկը՝ 1-ին և երեկոյան՝ 8-ին։ Միջին հաշվով ամեն մի կովի օրական տվել եմ 6 կգ. լավորակ խոտ, դարման, 20—30 կգ. սիլոս, կթվողներին՝ 1 և հղիներին՝ 0,5 կգ. խտացրած կեր։ Բարձրակիթ, ծանր քաշ ունեցող կովերը, մյուսների համեմատությամբ, 30—50 տոկոսով ավելի կեր են ստացել։ Կովերին օրական երկու անգամ մաքրել եմ (առավոտյան կթից առաջ և կեսօրվա կթից առաջ), երկու անգամ ջրել, մեկ անգամ զբոսանքի հանել։



Կովերի խնամքը միշտ էլ կատարում եմ նույն ժամին, կայուն ռեժիմով և դա նպաստում է կովերի գիրության պահպանմանն ու կաթնատվության բարձրացմանը։

Բնականաբար, անասունների նկատմամբ կիրառվող խնամքն ու ռեժիմը կարևոր նշանակություն ունեն։ Բայց դրանք ցանկալի արդյունք չեն տա, եթե ֆերման չունենա կերերի լավ պաշար։ Այդպիսի պաշար մեր կոլտնտեսությունն անցյալ տարի ուներ, որի շնորհիվ ձմռան մսուրային շրջանում ֆերման յուրաքանչյուր կովից ստացավ 581 կգ. կաթ։ Ութ ամսվա ընթացքում իմ խնամած 9 կովի միջին կաթնատվությունը կազմեց 974 կգ.։ Այսպիսի արդյունքով մեր ֆերման սկսեց անասունների պահվածքի արոտային շրջանը։

Մենք անհրաժեշտ գտանք վերանայել մեր պարտավորությունը և որոշեցինք յուրաքանչյուր ֆուրաժային կովից 1.700-ի փոխարեն ստանալ 1.900—2.000 կգ. կաթ։ Ես և մի շարք այլ կթվորուհիներ պարտավորվեցինք ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել 2.200 կգ.-ի։

Այս պարտավորության կատարումը դարձել է մեր ֆերմայի աշխատողների պատվի գործը։

Այժմ մեզ մոտ տարվա ամենալավ շրջանն է։ «Ագրիչայի» ալպյան արոտավայրերը ծածկված են հարուստ բուսականությամբ։ Մատղաշները և կովերը վատ եղանակներին գիշերը պահվում են տիպային շենքերում։

Սակայն, նույնիսկ շատ լավ պայմանները քիչ արդյունք կտան, եթե դրանք վատ օգտագործվեն։ Ահա թե ինչու մենք բոլոր միջոցները ձեռք ենք առնում մեր հնարավորությունների արդյունավետ օգտագործելու համար։

Մեր արոտավայրերը բաժանված են հատվածների և օգտագործվում են հերթափոխությամբ։ Առաջ, սեզոնի սկզբում, կովերը առավոտյան և երեկոյան կթվում էին ֆերմայում, իսկ կեսօրին՝ արոտավայրում։ Ֆերմայի ու արոտավայրի հեռավորությունը 7—8 կիլոմետրի է հասնում։ Այդքան ճանապարհը անդրադառնում էր կաթնատվության վրա։ Մենք որոշեցինք օրվա երեք կիթն էլ կատարել արոտում և դա անասուններին ազատեց երկար ճանապարհ կտրելուց։ Արոտում, կովերի կաթնատվության գործում, վճռական նշանակություն ունի ջուրը։ Դրա-



նում մենք համոզվեցինք, երբ անձրևների պատճառով մի քանի օր (հունիսի սկզբներին) կովերը հեռու չտարանք ու պահեցինք գետի ափերին։ Այդ օրերին ընդհանուր կաթը 100—150 կիլոգրամով ավելացավ։ Ուստի, մենք՝ կթվորուհիներս ու անասնապահները, հարց դրեցինք կոլտնտեսության վարչության առաջ՝ պայմաններ ստեղծել կովերին առատ ու լավորակ ջրով ապահովելու համար։ Մեր խնդիրը կատարվեց և կովերի կաթնատվությունը բարձրացավ։

Արոտային շրջանում շատ կարևոր է անասունների արածեցման ճիշտ կազմակերպումը։ Այդ գործը անթերի են կատարում մեր փորձված անասնապահներ Հով. Գալստյանը, Վ. Ներսիսյանը, Ս. Հարությունյանը և մյուսները։ Նրանք աշխատում են հերթով։ Դա հնարավորություն է տալիս կովերին գիշեր-ցերեկ արածեցնել, որը նպաստում է կաթնատվության բարձրացմանը։

Արոտային շրջանը լավ կազմակերպելով, մեր կոլտնտեսությունը մայիս ամսին ֆուրաժային կովից ստացավ 375 կգ., հունիսին՝ 400 կգ. կաթ։ Ես մայիսին ամեն մի կովից ստացել եմ 382 կգ., իսկ հունիսին՝ 450 կգ. կաթ։

Մեզ մնում է երկու ամիս մինչև տնտեսա-

կան տարվա վերջը։ Սովորաբար այդ ամիսներին արոտավայրերում բուսականությունը չորանում է, պակասում։ Այդ բանը հաշվի առնելով, մենք պատրաստել ենք անհրաժեշտ քանակությամբ սիլոս և որոշել ենք բոլոր միջոցներն օգտագործել՝ մինչև հոկտեմբերի 1-ը կովերի կաթնատվությունը 2.000 կգ.-ի հասցնելու համար։

Իմ խնամած ամեն մի ֆուրաժային կովից տաս ամսում ստացվել է 1.800 կգ. կաթ, դա հաստատուն հիմք է ստեղծել պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները՝ կովերի միջին կաթնատվությունը հասցնելու 2.200 կիլոգրամի։

---

# ԻՆՉՊԵՍ ԵՄ ԱՊԱՀՈՎՈՒՄ ԿՈՄԲԱՅՆԻ ԱՆԽԱՓԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

### Շահումյանի շրջանի ՄՏ կայանի կոմբայնավար Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ պատմածը

Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի այս եռուն օրերին մեր՝ մեխանիզատորներիս առջև դրված է լուրջ և պատասխանատու խնդիր՝ բերքը հավաքել ժամանակին և առանց կորստի։

Հարազատ պարտիայի և Սովետական կառավարության կողմից առաջադրած այդ խնդիրը պատվով կատարելու համար մեզանից պահանջվում է դաշտ դուրս բերել բարձր որակով վերանորոգման ենթարկված մեքենաներ, բարելավել նրանց տեխնիկական խնամքը, կանխել խափանումներն ու բարձրացնել մեքենաների արտադրողականությունը։

Ես, որպես «Ս—4» ինքնագնաց կոմբայնի

կոմբայնավար, ամեն ինչ արել եմ գյուղատնտեսական կուլտուրաների այս տարվա բերքը անկորուստ և սեղմ ժամկետում հավաքելու համար։ Անցյալ տարվա 333 հեկտարի դիմաց այս տարի ես պարտավորություն եմ ստանձնել հավաքել 600 հեկտար հացահատիկի բերք։ Ստանձնած պարտավորությանս զգալի մասը արդեն կատարել եմ։

Իմ կոմբայնը գտնվում է միանգամայն պատրաստ վիճակում։ Այդ մասին է վկայում նաև այն փաստը, որ հնձի այս եռուն օրերին, չնայած ինձ ամրացված հողամասի քարքարոտությանը, ես 8 հեկտարի փոխարեն օրական հնձում եմ 11—12 հեկտար տարածություն և յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսության պահեստ հանձնում 25—30 ցենտներ մաքուր ցորեն։ Բացի այդ, անցյալ տարվա աշխատանքի սեփական փորձով համոզվեցի, որ կալսելու ընթացքում իմ ինքնագնաց կոմբայնի մաղարկղից տեղի էր ունենում հատիկի զգալի կորուստ։ Այդ կորուստը կանխելու նպատակով այս տարի մաղարկղի որոշ մասերի վրա ստեղծել եմ լրացուցիչ հարմարանքներ։ Այդ հարմարանքների շնորհիվ իսպառ վերացվել է մաղի չափից դուրս ծանրաբեռնվածությունը։ Եթե առաջներում այդ ծանրաբեռնվածու-



թյան հետևանքով հատիկի որոշ մասը խառնըվում էր ծղնոտին, ապա այժմ իմ ստեղծած հարմարանքը հնարավորություն է տալիս կանխել հատիկի կորուստը։ Այդ նույն նպատակով կոմբայնի կալսող թմբուկի տակ ավելացրել եմ հատիկ որսացող թիթեղյա մի այլ հարմարանք։

Հաշվի առնելով այն հանգամանքը, որ իմ կողմից սպասարկվող Սպանդարյանի կոլտնտեսության դաշտերը չափազանց քարքարոտ են, որի հետևանքով հնձող ապարատը կարճ ժամանակից հետո կարող է շարքից դուրս գալ, ես հնձող ապարատի ներքևի մասը պատել եմ 5 միլիմետր հաստություն ունեցող թիթեղով և ապարատը լիովին ապահովել հնարավոր վնասվածքներից։ Հնձիչ ապարատները քարքարոտ պայմաններում է՛լ ավելի ապահով դարձնելու նպատակով, թիթեղապատումից բացի, նրանց տակ ամրացրել եմ անկյունաձև թանոններ։ Բացի վերոհիշյալ միջոցառումներից, ատամնանիվների որոշ կետերում ավելացրել եմ ուղղապահ գլանիկներ, որի շնորհիվ առաջվա հինգ ատամի փոխարեն շղթան այժմ ընդգրկում է 11 ատամ, որը ավելի սահուն է դարձնում մեքենայի աշխատանքը,

կանխում ավելորդ ցնցումներն ու խափանումները։

Կոմբայնի վրա կատարած նորարարական իմ առաջարկությունները մեծ հետաքրքրություն են առաջացրել նաև մեր ՄՏ կայանի մյուս կոմբայնավարների շրջանում։ Նրանցից շատերը, հետևելով իմ օրինակին, իրենց խնամքին հանձնված կոմբայնների վրա նույնպես ստեղծել են օժանդակ հարմարանքներ։ Այսպես, օրինակ, երբ Սպանդարյանի կոլտնտեսությունում կոմբայնային աշխատանքներն ավարտվեցին, ՄՏ կայանի դիրեկցիայի կարգադրությամբ ինձ իմ կոմբայնով տեղափոխեցին Նոր Կյանք գյուղի Մայիսի մեկի անվան կոլտնտեսության դաշտերն հնձելու։ Տեղափոխման հիմնական պատճառն այն էր, որ ինձանից առաջ ՄՏ կայանի կողմից այդ կոլտնտեսությունն ուղարկված նույն՝ «Ս—4» մարկայի կոմբայնը անհաջող աշխատելու հետևանքով թերակատարել էր օրվա առաջադրանքները, վտանգի տակ դնելով բերքը առանց կորստի հավաքելու մասին ՄՏ կայանի ստանձնած պարտավորության կատարումը։

Տեղում, մոտիկից ծանոթանալով կոմբայնավար Ռ. Սարգսյանի կոմբայնին, ես պարզեցի նրա անարդյունավետ աշխատելու



պատճառները։ Ամենագլխավոր թերությունը հանդիսանում էր կալսիչ ապարատի անկանոն աշխատանքը, որի հետևանքով տեղի էր ունենում հատիկի զգալի կորուստ, այսինքն՝ այն նույն երևույթը, որը դեռ անցյալ տարի նկատվում էր նաև իմ կոմբայնի կալսիչ ապարատի մոտ։

Առանց ժամանակ կորցնելու, մեկ—երկու օրվա ընթացքում իմ, կոմբայնավար Ս. Սարգսյանի և ՄՏ կայանի գլխավոր ինժեներ Ժ. Աղաջանյանի մասնակցությամբ կալսիչ ապարատը արագ վերանորոգվեց և այդ կոմբայնն սկսեց իր նորմալ աշխատանքը։ Դրական փորձի արմատավորման նման օրինակներ կան նաև մեր մյուս կոմբայնավարների մոտ, որը նրանց հնարավորություն է տալիս, սահմանված 8 հեկտարի դիմաց, օրական կատարել 10—12 հեկտարի հունձ։

Ինչպես ես, նույնպես և իմ կոմբայնավար ընկերներից յուրաքանչյուրը, մտնելով բերքահավաքը բարձր որակով և ամենասեղմ ժամկետում ավարտելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ, պարտավորություն է ստանձնել այս սեզոնում պլանային 180 հեկտարի դիմաց կատարել 500—600 հեկտարի հունձ։ Եվ մենք պատվով կկատարենք մեր խոստումը։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**

**Երևանի Պահածոների գործարանի աշխատանքի և աշխատավարձի բաժնի վարիչ**

Կոմունիզմ կառուցող սովետական մարդկանց հսկայական ստեղծագործական աշխատանքի մեջ մարմնավորվում է Կոմունիստական պարտիայի ստեղծող, մեր մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի պատմական ցուցումը այն մասին, որ արտադրողականության բարձրացումը վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։

Աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացումը հանդիսանում է սոցիալիստական արտադրության աճի կարևորագույն պայմանը, որը միաժամանակ նպաստում է սովետական ժողովրդի առավելագույն պահանջմունքների բավարարման գործին։ Ահա՛ թե ինչու Կոմունիստական պարտիան արդյունաբերության աշ-



խատողների ուշադրությունը միշտ բևեռում է այդ հիմնական ցուցանիշի անընդհատ բարձրացման վրա։ ՍՍՌՄ զարգացման հնգամյա պլանով նախատեսված է 1951—1955 թվականներին աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ բարձրացնել 50 տոկոսով։ Հայտնի է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինչպես նաև տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշների կատարման հիմնական երաշխիքը հանդիսանում է արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորումը, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը և տեխնոլոգիական պրոցեսների սիստեմատիկ կատարելագործումը։

Հնգամյակի տարիներին Երևանի Պահածոների գործարանում զգալի աշխատանք է կատարվել առաջնակարգ տեխնիկայի կիրառման, աշխատատար շատ պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Այդ տարիների ընթացքում գործարանի բաժանմունքներում տեղադրվել են մի շարք նոր մեքենաներ ու սարքավորումներ, կատարելագործվել են աշխատատար շատ պրոցեսներ։ Այդ միջոցառումները հնարավորություն են

տվել զգալի չափով ավելացնել թողարկվող արտադրանքի քանակը։ Գործարանի կոլեկտիվը 1954 թվականին երկրի բնակչությանը տվեց մոտ 6 միլիոն 200 հազար տուփ ավելի պահածոներ, քան 1950 թվականին, իսկ այս տարի երկրին կտա 28 միլիոն 700 հազար պայմանական տուփ մրգի և բանջարեղենի պահածո, որը 1950 թվականի պլանային մակարդակը կգերազանցի 59 տոկոսով։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր բանվոր ընթացիկ տարում, 1950 թվականի համեմատությամբ, մոտ 37 հազար ռուբլու ավելի արտադրանք կտա։

1955 թվականի արտադրական պլանը տնտեսական բոլոր ցուցանիշներով ժամկետից շուտ կատարելու համար գործարանի ինժեներա-տեխնիկական աշխատողների, արտադրության առաջավոր բանվորների ակտիվ մասնակցությամբ մշակվեցին տեխնիկական-կազմակերպչական մի շարք միջոցառումներ՝ արտադրության «նեղ» տեղերը վերացնելու, արտադրական տարածություններից և սարքավորման յուրաքանչյուր միավորից ավելի շատ արտադրանք ստանալու համար։ Այսպես, օրինակ՝ բանջարեղենի ցեխը լրիվ չափով մեքենայացվեց, ո-



րի շնորհիվ խնայվեց բանվորական ուժը՝ 10—15 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ մինչև 20 տոկոսով։

Ընթացիկ տարում մրգի ցեխում տեղադրվեցին չժանգոտվող պողպատից պատրաստված 200 լիտր տարողությամբ եփման 3 կաթսաներ, որոնք հնարավորություն կտան ջեմի արտադրությունն ավելացնելու 300 հազար տուփով։

Տեխնիկական մի շարք միջոցառումներ են կենսագործված նաև տոմատի ցեխում։ Այս տարի հումքը նախնական մշակման բաժնից կփոխադրվի հիդրավլիկ տրանսպորտյորների միջոցով։ Այդ միջոցառումը կթեթևացնի բանվորների աշխատանքը և զգալի չափով կբարելավի թողարկվող արտադրանքի որակը։

Վերադասավորված են հումքի նախնական մշակման բաժնի սարքավորումները և դրված է տոմատի մշակման նոր ագրեգատ։ Այդ ցեխում անցկացվող միջոցառումները թույլ կտան հերթափոխում մշակել մոտ 30 տոկոսով ավելի տոմատ, քան անցյալ տարի։ Եղած արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք ստանալու համար տոմատի ցեխում տեղադրվե-

ցին լրացուցիչ սարքավորումներ, որով հնարավոր եղավ այս տարի ցեխում մշակման ենթարկել 500 տոննա ծիրան և պլանից դուրս բնակչությանը տալ մեկ միլիոն տուփ հյութ և ջեմ։

Կազմակերպչական տեխնիկական միջոցառումներին զուգընթաց զգալի աշխատանք կատարվեց նաև կադրերի որակավորման գծով։ Կազմակերպված կարճատև դասընթացների միջոցով այս տարի որակավորվեցին մոտ 200 հոգի։

Աշխատանքի ճիշտ նորմավորումը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր պայմաններից է։ Մինչև արտադրական սեզոնի սկսվելը մեզ մոտ վերանայվեցին նորմաները և արմատավորվեցին նոր պրոգրեսիվ նորմաներ, որոնք նպաստում են արտադրանքի թողարկման ավելացմանը և ապահովում բարձր աշխատավարձ բանվորների համար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման գործին խոշոր չափով նպաստում են արտադրության առաջավորների փորձի ուսումնասիրումը և նրանց կողմից արված ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումն արտադրության մեջ։



Գործարանի աշխատողների կողմից արված բազմաթիվ ռացիոնալիզատորական առաջարկությունները արմատավորելով արտադրության մեջ, մեծ չափերով կրճատվեց խոտան արտադրանքը։ Օրինակ՝ մրգի ցեխի փականագործ կոմունիստ Գևորգ Հակոբյանի առաջարկությամբ տուփերի կափարիչներ փակցնող մեքենայի վրա հարմարեցնելով հատուկ սարքավորում, գործարանում խոտան արտադրանքը 10 տոկոսով իջավ, որն իր հերթին հնարավորություն տվեց զգալի չափով բարձրացնել նաև մեքենայի օգտագործման գործակիցը։

Տակառ-կափարիչների ցեխում անկանոն աշխատելու պատճառով օգտագործումից հանված էր կափարիչներ արտադրող շտամպներից մեկը։ Ցեխի վարպետ Չխոյանի և երիտասարդ փականագործ Յու. Վարպետյանի առաջարկությամբ մեքենան վերափոխման ենթարկվեց և հատուկ սարքավորումներ հարմարեցնելու միջոցով այժմ հրաշալի աշխատում է, հերթափոխում արտադրելով 10—12 հազար կափարիչ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի նաև աշխատանքային ժամերի ռացիոնալ օգտագործումը։ Այդ ուղղու-

թյամբ այս տարի գործարանում որոշակի աշխատանք է կատարված։ Կենսագործելով Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների կողմից առաջադրված խնդիրները, գործարանի կոլեկտիվը արտադրական բարձր ցուցանիշներով փակեց ընթացիկ տարվա առաջին կիսամյակը։ Կիսամյակի պլանը կատարվեց 159 տոկոսով։ Գործարանը 6 ամսվա ընթացքում, անցյալ տարվա համեմատությամբ, երկրին տվեց 2 միլիոն 900 հազար տուփ ավելի պահածո։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր բանվոր 9.400 ռուբլու արտադրանք ավելի է տվել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։ Այս տարվա արտադրական պլանը գերազանց կատարելու նպատակով գործարանում ծավալվում է սոցմրցությունը։

Արդեն մի քանի տարի է, ինչ մեր կոլեկտիվը մրցության մեջ է Գորիի Պահածոների գործարանի աշխատողների հետ։ Ցեխերում, հերթափոխություններում բանվորներն ու բանվորուհիները պայքարում են պատվով կատարելու մրցությամբ ստանձնած պարտավորությունը, 1955 թվականի արտադրական պլանը կատարել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 35-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 29-ին։

---



# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ԿՊԱՇՏՊԱՆԵՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ

ՅԱ. ՄԱԿԱՐԵՆԿՈ

Հունիսի վերջերին Հելսինկիում (Ֆինլանդիա) կայացավ Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան։

Խաղաղության համար ժողովուրդների շարժման պատմության մեջ այդ Ասամբլեան կգրավի նշանավոր տեղ։ Դեռ երբեք չէր հրավիրվել խաղաղության և անվտանգության պրոբլեմներին նվիրված այդպիսի միջազգային ներկայացուցչական ժողով։ Ասամբլեային մասնակցում էին 1.841 մարդ՝ 68 երկրներից։ Բանվորների և գյուղացիների կողքին՝ խաղաղության պահպանման հարցերը քննարկում էին առևտրական և արդյունաբերական շրջանների 74 ներկայացուցիչներ, եկեղեցու 72 գործիչներ, պառլամենտների 146 դեպուտատներ, ականավոր գիտնականներ, գրողներ, արտիստներ։ Ասամբլեայի ամբիոնից հանդես էին գալիս կոմունիստներ և քրիստոնյաներ, սոցիալ-դեմոկրատներ և

պացիֆիստներ, տարբեր ուղղության պատկանող քաղաքական և պետական գործիչներ, տարբեր փիլիսոփայական և կրոնական համոզմունքի տեր մարդիկ։ Նրանց ելույթների հիմնական թեմաներն էին այնպիսի հրատապ հարցեր, ինչպիսիք են զինաթափման և ատոմային զենքի արգելման պրոբլեմը, ռազմական բլոկները, ազգերի անվտանգությունը և համագործակցությունը, ժողովուրդների անվտանգությունը և խաղաղության պահպանումը։

Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան ցուցադրեց ժողովուրդների փոխըմբռնողության ոգի, նրանց անկաշկանդելի ձգտումը դեպի միասնություն պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու հարցում։ Ասամբլեայի մասնակիցները փոխադարձ հարգանքի պայմաններում արտահայտելով և համադրելով տարբեր տեսակետներ, աշխատում էին գտնել և գտնում էին բոլորի համար ընդունելի որոշումներ։

Ասամբլեայի կարևորագույն արդյունքներից մեկն այն է, որ նա երևան բերեց հրսկայական հնարավորություններ նոր պատերազմի սպառնալիքի դեմ մղվող պայքարում բոլոր խաղաղասեր ուժերի գործողությունների միասնության հասնելու համար։



Բոլոր երկրների և մայրցամաքների ժողովուրդները խաղաղություն են ցանկանում։ Միլիոնավոր մարդիկ, որոնք ընդգրկված են արդիականության անպարտելի ու հզոր շարժման մեջ, խաղաղության կողմնակիցների շարժման մեջ, հավատացած են, որ լիակատար հնարավորություն կա պահպանելու և ամրապնդելու խաղաղությունը, ամրապնդելու բարեկամությունը ժողովուրդների միջև։ Բոլոր երկրներում էլ տարբեր համոզմունքի տեր մարդիկ ջերմորեն պաշտպանում են միջազգային լարվածության հետագա թուլացման ուղղությամբ Սովետական կառավարության ձեռնարկած միջոցառումները։ Նրանք իրենց կառավարություններից պահանջում են դիմել նույնպիսի վճռական քայլերի, պնդում են, որ միջազգային բոլոր վիճելի հարցերը լուծվեն բանակցությունների միջոցով։ Պետությունների միջև նորմալ հարաբերություններ հաստատելու համար Սովետական Միության անշեղ պայքարը հսկայական ազդեցություն է գործում միջազգային ամբողջ իրադրության վրա։

Խաղաղության Համաշխարհային Ասամբլեայի մասնակիցները նշեցին այն հիմնական ուղիները, որոնցով պետք է ծավալվի խաղաղասեր ուժերի հետագա պայքարը մի-

ջազգային լարվածությունը թուլացնելու, բոլոր ժողովուրդների անվտանգությունն ապահովելու համար, կայուն և տևական խաղաղության համար։ Ասամբլեան ամբողջ երկրագնդի միլիոնավոր մարդկանց սրտերին վստահություն ներշնչեց, որ միջազգային արդի պայմաններում էլ, չնայած լուրջ տարաձայնությունների առկայությանը, հնարավոր է համաձայնեցված որոշումների հասնել հասունացած կարևորագույն պրոբլեմների լուծման գործում։ Այդ է Հելսինկիում կայացած Ասամբլեայի միջազգային մեծ նշանակությունը։

Մարդկության բոլոր խաղաղասեր ուժերի կամքը իր արտահայտությունը գտավ Խաղաղության Համաշխարհային Ասամբլեայի ընդունած Դիմումի մեջ։ Հսկայական համոզիչ ուժ ունեցող այդ փաստաթուղթը, անշուշտ, դրոշ կհանդիսանա ամբողջ աշխարհի բարի կամքի մարդկանց համար։

Ասամբլեայի դելեգատները և ստեղծված հանձնաժողովները հանձնարարականներ մշակեցին խաղաղության և միջազգային անվտանգության համար մղվող պայքարի կենսական հարցերի վերաբերյալ և ամենից առաջ զինաթափման ու ատոմային զենքի արգելման հարցերի վերաբերյալ։ Բոլորին



հայտնի է, որ այդ կարևորագույն հարցերի լուծումը համառ դիմադրության է հանդիպում «ուժի դիրքերից» ելնող քաղաքականության կողմնակիցների կողմից։ Ասամբլեայի մասնակիցները մանրամասնությամբ և հանգամանորեն քննության առան այն սկզբունքները, որոնց կենսագործումը կարող է հանգեցնել սպառազինությունների ընդհանուր կրճատման և ատոմային զենքի արգելման։ Ընդսմին՝ մեծ ուշադրություն դարձվեց Սովետական կառավարության պարզ ու կոնկրետ առաջարկներին։ Ասամբլեայի դելեգատները միահամուռ կերպով հանգեցին այն հետևության, որ ինչպես միջուկային զենքի, այնպես էլ մասսայական ոչնչացման զենքի բոլոր մյուս տեսակների գործադրման և արտադրման արգելումն անհրաժեշտ քայլ է հանդիսանում մարդկությանը սպառազինությունների բեռից ազատելու ճանապարհին։

Ասամբլեայի շատ մասնակիցների ելույթներում նշվում էր, որ միջուկային զենքի ոչնչացումը պետք է դառնա զինաթափման ընդհանուր պլանի մի բաղկացուցիչ մասը։ Անգլիական հայտնի գիտնական, պրոֆեսոր Ջոն Բեռնալն այդ կապակցությամբ ընդգծեց սպառազինությունների կրճատման, ատոմային զենքի արգելման և նոր պատերազմի

սպառնալիքի վերացման հարցերի վերաբերյալ Սովետական կառավարության արած առաջարկների առանձնահատուկ կարևորությունը։

Ասամբլեայի դելեգատների, դիտորդների և հյուրերի կողմից միահամուռ հավանության արժանացավ այն առաջարկը, որ հրավիրվի սպառազինությունների կրճատման և ատոմային զենքի արգելման կոնֆերանս՝ ՄԱԿ-ի ինչպես անդամ, այնպես էլ ոչ անդամ բոլոր երկրների կառավարությունների մասնակցությամբ։

Ասամբլեայում մեծ ուշադրություն նվիրվեց ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու պրոբլեմների քննարկմանը։ Զինաթափման և ատոմային զենքի հանձնաժողովի հանձնարարականներում այդ հարցի առթիվ նշված է.

«Էֆեկտիվ զինաթափությունը և ատոմային պատերազմի վտանգի վերացումը բացում են հսկայական հնարավորություններ, որոնք կարող են օգտագործվել մարդկության բարօրության համար»։

Անսամբլեայի մասնակիցները վճռականորեն դատապարտեցին «ուժի դիրքերից» ելնող քաղաքականության կիրառումը միջազգային հարաբերություններում, սպա-



ռազինությունների մրցավազքը և ներփակ ռազմական բլոկների գոյությունը, որոնք ուղղված են ուրիշ երկրների անվտանգության դեմ։ Դրա հետ միասին Խաղաղության Համաշխարհային Ասամբլեայի դելեգատները միահամուռ կերպով պաշտպանեցին Ասիայի և Աֆրիկայի երկրների բանդունգյան կոնֆերանսի ընդունած սկզբունքները։ Դելեգատները իրենց ելույթներում նշում էին, որ նման կոնֆերանսների հրավիրումը, որոնց մասնակցեցին զանազան աշխարհամասերի երկրները, կարող է հանգեցնել միջազգային լարվածության թուլացմանը։ Ելույթներում ընդգծվում էր, որ նման ճանապարհով լիովին հնարավոր է համաձայնություն ձեռք բերել նաև եվրոպական անհետաձգելի հարցերում։

Ժողովուրդները հսկայական հույսեր են տածում չորս մեծ տերությունների ղեկավարների առաջիկա հանդիպման նկատմամբ։ Խաղաղության Համաշխարհային Ասամբլեայի Դիմումում ընդգծվում է, որ այն հարցերի թվին, որոնց լուծումը բարի կամքի դրսևորում է պահանջում մեծ տերությունների կողմից, պատկանում է եվրոպական բոլոր պետությունների անվտանգության և տնտեսական ու կուլտուրական

սերտ համագործակցության ապահովումը։ Դա կլինի առաջին էտապը այնպիսի Եվրոպայի ստեղծման գործում, որտեղ ապահովված կլինի եվրոպական բոլոր երկրների անվտանգությունը։ Այդ խնդրի լուծումը կապված է ռազմական բլոկների ու խմբավորումների չհարող միասնական, դեմոկրատական, խաղաղասեր Գերմանիա ստեղծելու հետ։ Ասամբլեան պահանջեց չորս մեծ տերությունների ղեկավարների խորհրդակցությունից՝ դնել եվրոպական անվտանգության ֆունդամենտը։ Նա այդ խնդրի կատարման համար անհրաժեշտ է համարում իրագործել մի շարք անհետաձգելի միջոցառումներ. առաջարկեց սահմանափակել ոստիկանական ուժերը և զինված կոնտիգենտները ինչպես Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայում, այնպես էլ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում։ Գերմանիայի միավորման ճանապարհին՝ որպես առաջին քայլ, նորմալ փոխհարաբերություններ հաստատել գերմանական երկու ռեսպուբլիկաների միջև։

Ասամբլեան խաղաղասեր ուժերի առաջ դրեց մի անհետաձգելի խնդիր՝ պայքարել Եվրոպան ռազմական բլոկների պառակտելու դեմ, փոխըմբռնողության հասնել բո-



լոր պետությունների միջև՝ անկախ նրանց ռեժիմներից, պայքարել Գերմանիայի այնպիսի միավորման համար, որը բացառեր գերմանական միլիտարիզմի վերածնման հնարավորությունը և Գերմանիայի մասնակցությունը որևէ ռազմական դաշինքի։ Խաղաղության և միջազգային համագործակցության շահերը պահանջում են ստեղծել կոլեկտիվ անվտանգության եվրոպական ամուր սիստեմ, որին մասնակցեին բոլոր եվրոպական երկրները։

«Ռազմական բլոկներ և անվտանգություն» հանձնաժողովի հանձնարարականներում առաջադրվում է այն պահանջը, որ բոլոր պետությունները համաձայնեն ղեկավարվելու փոխադարձ հարգանքի, տերիտորիալ ամբողջականության և սուվերենության, չհարձակվելու, ներքին գործերին չմիջամտելու, հավասարության և փոխադարձ շահավետության և խաղաղ գոյակցության սկզբունքներով։ Այդ սկզբունքներն են կազմում Միավորված Ազգերի Կանոնադրության էությունը։

«Խաղաղությունը և միջազգային անվտանգությունը,— ասված է հանձնարարականներում,— կարող են պահպանվել միայն այն դեպքում, եթե հինգ մեծ տերությունները, ո-

րոնք կրում են դրա գլխավոր պատասխանատվությունը, ձգտեն հասնելու անհրաժեշտ համագործակցության և համերաշխության, ոգեշնչվելով այն սկզբունքներով, որով ղեկավարվում էին նրանք Միավորված Ազգերի Կազմակերպությունը հիմնելիս»։

Ասամբլեան ընդգծեց, որ բեղմնավոր համագործակցությունը ժողովուրդների միջև կոչված է հաստատել և ամեն կերպ պահպանել Միավորված Ազգերի Կազմակերպությունը։ ՄԱԿ-ին ուղղված իր դիմումում Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան ընդգծեց, որ Միավորված Ազգերի Կազմակերպությունը պետք է հավատարիմ լինի իր Կանոնադրությանը և հինգ մեծ տերությունների միաձայնության սկզբունքին, լինի իսկական համայնապարփակ կազմակերպություն։ Այդ կապակցությամբ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային պետք է վերադարձվի իրավամբ նրան պատկանող տեղը ՄԱԿ-ում։

Ասամբլեայում լայնորեն քննարկվեց Ասիայի պրոբլեմը։ Ասամբլեան պահանջեց խստորեն պահպանել ժողովուրդների սուվերենիտետը, Ասիայից դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը և ոչնչացնել այնտեղ եղած բոլոր օտարերկրյա բազաները։ Քանի



որ Տայվան կղզին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մի բաղկացուցիչ մասն է, ապա կղզում գտնվող բոլոր զորքերի անհապաղ դուրս բերումը միայն կարող է խաղաղության երաշխիք լինել երկրագնդի այդ շրջանում։ Ասամբլեան շեշտեց, որ անհրաժեշտ է խստորեն պահպանել Կորեայում կնքված զինադադարի պայմանները։ Ամենակարճ ժամանակամիջոցում պետք է հրավիրել շահագրգռված երկրների միջազգային կոնֆերանս՝ Կորեական հարցը խաղաղ կերպով կարգավորելու և Կորեան որպես դեմոկրատական, անկախ պետություն միավորելու համար։ Ասամբլեան պնդում է, որպեսզի խստիվ պահպանվեն Ժնևյան համաձայնագրերը և որպեսզի ընդհանուր ազատ ընտրություններ անցկացվեն Վյետնամում, Լաոսում և Կամբոջայում։

Ասամբլեան բոլոր շահագրգռված երկրներին կոչ արեց հրաժարվել բռնության ամեն տեսակ փորձերից և բոլոր վիճելի հարցերը լուծել բանակցությունների միջոցով։ Համոզված լինելով այն բանում, ինչպես նշվում է ազգային սուվերենիտետի և խաղաղության հանձնաժողովի հանձնարարականներում, որ միայն հասարակական կարծիքի ներգործությունը կարող է ապահովել

միջազգային բոլոր պրոբլեմների խաղաղ կարգավորումը, Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան հայտարարեց, որ ազգերի, աշխարհայացքի, կրոնի, սոցիալական դասակարգերի կամ կազմակերպությունների տարբերությունը չի կարող խոչընդոտ հանդիսանալ ազատորեն համագործակցելու հանուն խաղաղության։

Ասամբլեան բոլոր երկրների պառլամենտներին և կառավարություններին խորհուրդ տվեց կրճատել սպառազինությունները ու զինված ուժերը և դրա շնորհիվ ազատվող միջոցներն օգտագործել խաղաղ արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման համար, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար, թույլ զարգացած երկրներին անհրաժեշտ օգնություն ցույց տալու համար։

Ասամբլեայում ընդհանուր պաշտպանության արժանացավ միջազգային տնտեսական հարաբերություններում ամեն մի խտրականություն և անհավասարություն վերացնելու պահանջը։ Տնտեսական և սոցիալական պրոբլեմների հանձնաժողովի հանձնարարականներում ընդգծվում է բոլոր երկրների միջև տնտեսական և առևտրական կապերը զարգացնելու անհրաժեշտությունը։



Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան իր աշխատանքում մեծ ուշադրություն դարձրեց նաև ժողովուրդների կուլտուրական համագործակցությանը։ Կուլտուրայի փոխանակության հանձնաժողովը ընդունեց ընդհանուր Դեկլարացիայի տեքստը, որի մեջ կոչ է անում մտավոր աշխատանքի բոլոր աշխատողներին, կուլտուրայի և արվեստի աշխատողներին՝ հանդես գալ իրենց ժողովուրդների հետ համատեղ, իրենց գործունեությամբ նպաստել ամբողջ աշխարհում ըմբռնողության և համաձայնության մթնոլորտ ստեղծելուն։

Հելսինկիում կայացած Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան խաղաղության հզոր ու անպարտելի ուժերի ստուգատեսն էր։ Նա ամբողջ մարդկությանը ցույց տվեց, որ խաղաղության շարժումը դարձել է մասսայական մի մեծ շարժում, որին գնալով ավելի շատ են հարում տարբեր աշխարհահայացք ունեցող և տարբեր հասարակական հոսանքների պատկանող մարդիկ։

Ասամբլեան դրա հետ միասին ցույց տվեց, թե մեր ժամանակներում ինչպիսի մեծագույն ուժ է իրենից ներկայացնում համաշխարհային հասարակական կարծիքը։

Այդ կարծիքի հետ չեն կարող հաշվի





չնսատել, չեն կարող այն անտես առնել կառավարությունների ու պետությունները։ Այժմ ժողովուրդները չունեն ավելի ուժեղ, ավելի հզոր ձգտում, քան խաղաղության ձգտումը, ամուր բարեկամական կապեր հաստատելու ձգտումը, փոխադարձ հավատի ու համագործակցության ձգտումը։ Դա գրավական է այն բանի, որ ժողովուրդները, ոգեշնչված խաղաղության պահպանման ու ամրապնդման մեծ գաղափարով, կգործադրեն իրենց բոլոր ջանքերը՝ Ասամբլեայի որոշումները հաջողությամբ կենսագործելու համար։

Ժողովուրդները կպաշտպանեն խաղաղության գործը։

---

## СОДЕРЖАНИЕ

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД

Стр.

Уборка урожая—всенародное дело . . . . . 1

**Х. Овакимян.**—Беседа о советском патриотизме . . . . . . . . . . . . 6

### ИЗ ОПЫТА ПЕРЕДОВИКОВ

Учимся у передовиков.—Рассказ доярки колхоза села Вагашен Мартунинского района, депутата Верховного Совета Армянской ССР Б. Акопян . . . . . . . 16

Как я обеспечиваю бесперебойную работу комбайна. — Рассказ комбайнера МТС Шаумянского района М. Багдасаряна . 23

**Х. Мартиросян.**—По пути повышения производства. . . . . . . . . . . 28

### МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ

**Я. Макаренко.**—Народы отстоят мир . . . 35

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 14 1955 г.

*ՎՖ 11089 Պատվեր 641 Տիրաժ 8760*

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։*